Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ



# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 9 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


ԷԼ ԱՎԵԼԻ ՈՒԺԵՂԱՑՆԵԼ ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ . . . . . . 1

Գյուղատնտեսական թեմաների շուրջը

ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԳԱՐՆԱՆ-ԱՄԱՌԱՅԻՆ ՄՇԱԿՈՒԹՅՈՒՆԸ . . . . 11

ԱՌԱՋԱՎՈՐ ԿՈԼԽՈԶԻ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ . . 24

Միջազգային թեմաների շուրջը

ՀՈՒՅՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՐՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ . 33



*Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին; հեռախոս՝ 33—36։*


# Է՛Լ ԱՎԵԼԻ ՈՒԺԵՂԱՑՆԵԼ ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Լենինի քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների բանվորների հայրենասիրական կոչը՝ հնգամյակը չորս տարում կատարելու մասին, ջերմ արձագանք գտավ մեր Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողների մեջ։ Արդյունաբերության և տրանսպորտի բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողները, մտնելով Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, պայքար են ծավալել հետպատերազմյան ստալինյան հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար։

Ծավալված մրցության շնորհիվ Սովետական Հայաստանի արդյունաբերությունը 1948 թվականի առաջին եռամսյակում հասավ զգալի հաջողությունների։ Նա պլանից

դուրս երկրին տվեց միլիոնավոր ռուբլիների լրացուցիչ արտադրանք։ Անցյալ տարվա առաջին եռամսյակի համեմատությամբ, արդյունաբերության համախառն արտադրանքն աճեց 22 տոկոսով։ Մետաղահատ դազգահների, «Բուդիլնիկ» ժամացույցների արտադրությունը համարյա կրկնապատկվել է, կաբելային պարագաների, շինարարական տուֆի, լուսամուտի ապակու արտադրությունն աճել է ավելի քան երկու անգամ, պղնձարջասպինը՝ 3,5 անգամ, կոմպրեսորներինը՝ 10 անգամ, համարյա կրկնապատկվել է բամբակե և բրդե գործվածքների, հրուշակեղենի, կենդանական յուղի արտադրությունը։ 1947 թվականի առաջին եռամսյակի համեմատությամբ, այս տարվա առաջին եռամսյակում կապիտալ շինարարության ծավալն աճեց 25 տոկոսով։

Այս տարի Սովետական Հայաստանի արդյունաբերության առջև դրված լուրջ խնդիրների հաջող լուծումը մեծ չափով կախված է բանվորների մեջ կատարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքի բարելավումից, բանվորների գիտակցականության և նրանց արտադրական ակտիվության բարձրացումից։



Որտեղ լավ է կազմակերպված ագիտացիոն-մասսայական աշխատանքը, այնտեղ ձեռնարկությունն աշխատում է շահութաբեր, հասնում է տնտեսական հաջողությունների։ Այստեղից էլ բխում է ձեռնարկություններում լայն ագիտացիոն-մասսայական աշխատանք կազմակերպելու անհրաժեշտությունը։

Պատվավոր և պատասխանատու է ագիտատորի դերը արտադրության մեջ։ Ագիտատորների խնդիրն է օր-ավուր պարզաբանել յուրաքանչյուր բանվորին, թե ինչ նշանակություն ունի նրա աշխատանքը հետպատերազմյան հնգամյակի պլանների կատարման համար մղվող ընդհանուր պայքարում։ Ագիտատորները պետք է արտադրության յուրաքանչյուր աշխատողին հասցնեն բոլշևիկյան խոսքը, պարզաբանեն նրանց, որ հնգամյա պլանի կատարումն ու գերակատարումն ապահովվում է եռամսյակային, ամսական և յուրաքանչյուր օրվա ընթացիկ տնտեսական պլանների կատարումով ու գերակատարումով յուրաքանչյուր բանվորի կողմից, տնտեսության յուրաքանչյուր բնագավառում, բոլոր արդյունաբերական ձեռնարկությունների ու նորակառույցների գծով։

Արդյունաբերական ձեռնարկություններում կատարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքն ավելի մեծ արդյունք է տալիս այն ժամանակ, երբ նա շաղկապվում է ձեռնարկության կոլեկտիվի առջև կանգնած խնդիրների հետ։ Իսկ այժմ արտադրության մեջ կարևորագույն խնդիրներն են՝ ուժեղացնել զարգացման տեմպերը, բարելավել շինարարական գործը, հասնել շահութաբեր աշխատանքի, կիրառել խնայողության խիստ ռեժիմ բոլոր բնագավառներում, աշխատել առանց դատացիայի, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը և ավելացնել սոցիալիստական կուտակումները։ Ագիտատորն իր զրույցների ընթացքում աչքաթող չպետք է անի այս հիմնական հարցերից և ո՛չ մեկը։

Հետպատերազմյան հնգամյակի երրորդ վճռական տարվա արտադրական պլանների կատարման ու գերակատարման համար ծավալված Համամիութենական սոցիալիստական մրցությունն արդյունաբերական ձեռնարկությունների բանվորների ու ինժեներատեխնիկական աշխատողների մեջ առաջ է բերել աշխատանքային հզոր վերելք։

Սոցիալիստական մրցությունն ունի կազմակերպող, դաստիարակող մեծ ուժ։ Նա



յուրաքանչյուր բանվորի մեջ դաստիարակում է իր վրա դրված գործի համար, ամբողջ կոլեկտիվի համար պատասխանատվության զգացում, ուժեղացնում է ստանձնած պարտավորություններն ազնվորեն ու բարեխիղճ կերպով կատարելու ձգտումը։ Ուստի ագիտատորի խնդիրն է լայն ագիտացիոն-մասսայական աշխատանքի կազմակերպման միջոցով նպաստել յուրաքանչյուր բանվորի, բրիգադայի, ցեխի, ձեռնարկության ստանձնած պարտավորությունների կատարմանը։ Իսկ դրան կարելի է հասնել, եթե ագիտատորը սիստեմատիկորեն հետևում է սոցիալիստական մրցության ընթացքին, օրավուր ամփոփում է ցեխի, բրիգադայի, հերթափոխության, յուրաքանչյուր բանվորի աշխատանքը և մասսայականացնում է այն։ Մրցողները պետք է իմանան, թե ո՞վ և ինչպե՞ս է կատարում իր ստանձնած պարտավորությունները։

Ձեռնարկություններում և տրանսպորտում քիչ չկան արտադրության առաջավորներ՝ ստախանովականներ, որոնք հայտնի են իրենց նորարարությամբ, ունեն աշխատանքի հարուստ փորձ։ Առաջավորների փորձի մասսայականացումը ագիտացիոն աշխատանքի

հիմնական խնդիրներից մեկն է։ Լայն կերպով օգտագործելով ռադիոն, մամուլը, ցուցադրական ագիտացիան, բանվորական ժողովները, ագիտատորները հնարավորություն կունենան արդյունաբերության աշխատողների լայն շրջանին ծանոթացնելու առաջավորների աշխատանքի մեթոդների հետ, բացատրելու նրանց հաջողությունների «գաղտնիքը»։

Առաջավորների փորձի մասսայականացման լավագույն միջոց է նաև իրենց՝ առաջավորների ելույթների կազմակերպումը ցեխի, բրիգադայի ժողովներում, բանվորական հավաքներում։

Հաճախ ագիտատորները սահմանափակվում են արտադրության առաջավորների ձեռք բերած առանձին արտադրական ռեկորդների մասսայականացումով միայն։ Դա ճիշտ չէ։ Երբեք չպետք է մոռանալ, որ առաջավոր փորձի պրոպագանդան ավելի լավ արդյունքներ կտա եթե ագիտատորն իր զրույցների ժամանակ պատմի նաև այն մեթոդների մասին, որոնց շնորհիվ լավագույն ստախանովականները հասել են արտադրողականության բարձրացման այդպիսի ռեկորդների։



Արտադրական պլանների հաջող կատարումը պահանջում է ամեն կերպ ընդլայնել կոլեկտիվ ստախանովյան աշխատանքը։ Միայն այս դեպքում է, որ աշխատանքի ստախանովյան մեթոդները դառնում են բանվորական լայն մասսաների սեփականություն, միայն այս դեպքում է անշեղորեն աճում նրանց գիտակցականությունը և գործարար որակավորման մակարդակը։

Ոչ թե առանձին ռեկորդների, այլ կոլեկտիվ ստախանովյան աշխատանքի վրա հենվող մեծ թվով առաջավոր ձեռնարկությունների փորձը ցույց է տալիս, որ ինչքան էլ մեծ լինեն աչքի ընկնող առանձին ստախանովականների հաջողությունները, այնուամենայնիվ արտադրության ընդհանուր վերելքը կախված է բանվորների ամբողջ մասսայի աշխատանքի արտադրողականության բարձրացումից։ Իսկ հայտնի է, որ աշխատանքի արտադրողականության բարձրացումը տանում է դեպի արտադրանքի ծավալի աճում, ապրանքաշրջանառության ծավալում և, վերջին հաշվով, հզոր աղբյուր է ծառայում աշխատավորների նյութական բարեկեցության հետագա վերելքի համար։

Որպեսզի ագիտատորը կարողանա հա-

ջողությամբ լուծել իր առջև դրված խնդիր-
ները, նա պետք է սիստեմատիկորեն ունկըն-
դիրներին ծանոթացնի հնգամյակի առաջա-
դրանքների ու դրանց կատարման ընթացքի
հետ, պարզաբանի պարտիայի և Սովետա-
կան կառավարության քաղաքականության
կարևորագույն հարցերը:

Քաղաքական ագիտացիան կոչված է սո-
վետական մարդկանց կողմնորոշելու նաև
միջազգային քաղաքականության հարցե-
րում: Այդ պատճառով էլ ագիտատորը պետք
է բանվորներին մշտապես ինֆորմացիա տա
միջազգային դրության մասին, բացատրի
Սովետական կառավարության արտաքին
քաղաքականությունը և նրա հետևողական
պայքարը հանուն կայուն ու երկարատև խա-
ղաղության՝ ամբողջ աշխարհում:

Քաղաքական ագիտացիայի ճիշտ կազմա-
կերպման օրինակ կարող են հանդիսանալ
Երևանի շոգեքարշային դեպոյի ագիտատոր
ընկ. Մ. Բուբուշյանի զրույցները:

Ընկ. Բուբուշյանը խնամքով պատրաստ-
վում է զրույցի համար: Նա սիստեմատիկո-
րեն դեպոյի բանվորներին ծանոթացնում է
հնգամյակի պլանների կատարման ընթացքի
հետ, հաղորդում է Սովետական Միության



ներքին կյանքին ու արտաքին քաղաքակա-
նությանը վերաբերող նորությունները, պար-
զաբանում է պարտիայի և կառավարության
որոշումները, կապելով դրանք արտադրու-
թյան պրակտիկ հարցերի հետ:

Երբ ընկ. Բուբուշյանն իմացավ, որ մեքե-
նավար ընկ. Կարապետյանը վառելանյութի
մեծ գերածախս է կատարում, անմիջապես
որոշեց ստուգել դրա պատճառները: Ստու-
գումից պարզվեց, որ վառելանյութի գերա-
ծախսը տեխնիկական թերությունների և դե-
պի շոգեքարշը անուշադիր վերաբերմունքի
հետևանք է:

Ագիտատորի զրույցը մեքենավարի հետ,
նրան օգնեց վերացնելու եղած թերություն-
ները, և դրա շնորհիվ Կարապետյանը ապրիլ
ամսին ոչ միայն գերածախս չունեցավ, այլև,
ընդհակառակը, տնտեսեց 6 տոննա վառե-
լանյութ:

Կիրովի անվան գործարանի № 1—8 ցեխի
ագիտատոր ընկ. Մ. Պիշչուլինան ցեխի
բանվորներին մշտապես տեղյակ է պահում
մեր երկրի ներքին կյանքին ու միջազգային
հարցերին, զրույցների ժամանակ օգտագոր-
ծում է կենտրոնական և տեղական թերթերի
նյութերը, կյանքից վերցված կենդանի փաս-

ներ։ Այստեղ ագիտացիոն աշխատանքի մեջ խոշոր դեր են կատարում «կայծակ»-թերթիկները, որոնց միջոցով ցեխի բանվորները մոբիլիզացվում են արտադրական պլանների կատարման համար։

Այժմ, երբ արդեն հանրագումարի են բերված նախամայիսյան մրցության արդյունքները, սովետական ժողովուրդը, բոլշևիկյան պարտիայի կոչերով ոգեշնչված, ձեռնարկել է նոր խնդիրների լուծման։ Օրեցօր ծավալվում է պայքարը այս տարվա արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու, արտադրանքն զգալիորեն ավելացնելու և նրա որակը բարելավելու, ինքնարժեքն իջեցնելու և աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար։

Արդյունաբերական ձեռնարկությունների ագիտատորների խնդիրն է՝ լայն ագիտացիոն-մասսայական աշխատանքի միջոցով մոբիլիզացնել բոլոր բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների ուժերը՝ հնգամյակի երրորդ վճռական տարվա առաջադրանքները հաջողությամբ կենսագործելու, հետպատերազմյան ստալինյան հնգամյակը չորս տարում կատարելու համար։



# ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԳԱՐՆԱՆ-ԱՄԱՌԱՅԻՆ ՄՇԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Անշեղորեն կիրառելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի՝ «Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին» պատմական որոշումը, Սովետական Հայաստանի գյուղատնտեսությունը 1947 թվականին բամբակի, ծխախոտի, շաքարի ճակնդեղի և խորդենու բերքատվության բարձրացման գործում հասավ զգալի հաջողությունների։ Նախորդ տարվա համեմատությամբ, 1947 թվականին յուրաքանչյուր հեկտարի փաստացի բերքատվությունը բարձրացավ՝ բամբակինը 1,6 ցենտներով, ծխախոտինը՝ 1, շաքարի ճակնդեղինը և խորդենունը 20-ական ցենտներով։

Բերքատվության բարձրացման, ինչպես

նաև ցանքատարածությունների ընդարձակման շնորհիվ, տեխնիկական կուլտուրաների մշակությամբ զբաղվող կոլխոզները 1947 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, պետությանն ավելի հանձնեցին՝ 2620 տոննա բամբակ, 9000 տոննա շաքարի ճակնդեղ, 1415 տոննա ծխախոտ, 480 տոննա խորդենի։

Ագրոտեխնիկական միջոցառումները ճիշտ և որակով կիրառելու, աշխատանքը լավագույն ձևով կազմակերպելու և աճեցրած բերքը ժամանակին ու անկորուստ հավաքելու շնորհիվ բամբակի, ծխախոտի, շաքարի ճակնդեղի և խորդենու մշակությամբ զբաղվող շատ կոլխոզներ, բրիգադաներ և օղակներ զգալիորեն գերակատարեցին բերքատվության պլանները, իսկ շատ օղակներ աճեցրին ռեկորդային բերք։

Ստալինյան նոր հնգամյակի երրորդ վճռական տարում մեր Ռեսպուբլիկայի բամբակագործների, ծխախոտագործների և ճակնդեղագործների առջև դրված են ավելի լուրջ խնդիրներ։

Արձագանքելով լենինգրադցիների հայրենասիրական կոչին, տեխնիկական կուլտուրաների մշակությամբ զբաղվող կոլխոզների



կոլխոզնիկները, մեքենատրակտորային կայանների աշխատողները և գյուղատնտեսության մասնագետները պարտավորվել են Ռեսպուբլիկայում տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունների ընդարձակման հնգամյա պլանը կատարել երեք տարում։ Նրանք մեծ պարտավորություններ են ստանձնել նաև բամբակի, ծխախոտի, շաքարի ճակնդեղի և խորդենու բերքատվությունը բարձրացնելու գործում։

Առաջավորների անցյալ տարվա հարուստ փորձն ապացուցեց, որ բամբակի, ծխախոտի, շաքարի ճակնդեղի և խորդենու բերքատվության բարձրացման գործում մենք ունենք դեռևս չօգտագործված հսկայական հնարավորություններ, և որ ագրոտեխնիկական միջոցառումների ժամանակին ու բարձրորակ կիրառման միջոցով հնարավոր է ոչ միայն կատարել, այլև զգալիորեն գերակատարել բերքատվության առաջադրանքները։

Գյուղատնտեսական կուլտուրաների, մանավանդ տեխնիկական կուլտուրաների բերքատվության բարձրացման համար կարևոր, իսկ հաճախ նույնիսկ վճռողական նշանակություն ունեն նրանց վեգետացիայի ընկրդրնական շրջանում կատարվող մշակման

աշխատանքները, որոնց շնորհիվ ստեղծ-
վում են կուլտուրաների նորմալ զարգաց-
ման համար անհրաժեշտ պայմաններ։ Այդ
մշակումներով է պայմանավորված ցանքա-
տարածությունների լիարժեքությունը, հե-
տևապես նաև նրանց բարձր բերքատվու-
թյունը։

Անցյալ տարի շատ կոլխոզներ թերագը-
նահատեցին այդ աշխատանքների կարևո-
րությունը։ Նրանք ժամանակին չկատարե-
ցին նոսրացումը, փխրեցումը, կուլտիվա-
ցիան, անբավարար կազմակերպեցին պայ-
քարը վնասատուների դեմ, խախտեցին ո-
ռոգման ժամկետները, որի հետևանքով ըս-
տացան ցածր բերք և չկատարեցին իրենց
պարտավորությունները պետության հան-
դեպ։

Այս տարվա կլիմայական առանձնահա-
տուկ պայմանների, գարունն ուշ բացվելու
պատճառով, տեխնիկական կուլտուրաների
մշակման ժամկետների պահպանումը հա-
տուկ կարևորություն է ստանում։

Բամբակի ցանքը Ռեսպուբլիկայի կոլխոզ-
ներում այս տարի կատարվեց ավելի կազ-
մակերպված, սեղմ ժամկետում և որ կա-
րևորն է, անցյալ տարիների համեմատու-



թյամբ ավելի լավ նախապատրաստված,
տեղական և հանքային պարարտանյութերով
պարարտացված հողերում։ Մշակման աշխա-
տանքները նույնպես ժամանակին ու ո-
րակով կատարելու դեպքում անպայման կա-
պահովվի բամբակի բարձր բերքը։

Մայիս ամսվա ընթացքում անհրաժեշտ է
կատարել բամբակենու մշակման հետևյալ
առաջնահերթ աշխատանքները։

Ագրոկանոնների համաձայն, դաշտերի
լիարժեքությունը, հետևապես՝ բարձր բերքը
ապահովելու համար յուրաքանչյուր հեկ-
տարի վրա, հաշվի առնելով սորտի առանձ-
նահատկությունները և հողի բերրիությունը,
պետք է ունենալ բամբակենու 90—110
հազար բույս։ Իսկ դրա համար անհրաժեշտ
է բամբակենու համատարած ծիլերը երևա-
լուց անմիջապես հետո, ստուգել յուրաքան-
չյուր հողակտորն ու շարքը և դատարկ մը-
նացած տարածություններում շտապ կեր-
պով թրջված ու ախտահանված սերմերով
նորից ցանք կատարել, կամ խիտ ծլած
շարքերից բամբակի բույսերը, հողի հետ
միասին, տեղափոխել ու սածիլել դատարկ
մնացած տեղերում և մշտական խնամքի,

հաճախակի ջրելու միջոցով ապահովել նրանց նորմալ աճումը։

Բամբակի դաշտերի լիարժեքությունն ապահովելու գործում չափազանց կարևոր նշանակություն ունի ճիշտ նոսրացումը, ավելորդ բույսերի հեռացումը։ Նոսրացումը պետք է սկսել ծիլերը լրիվ երևալուց հետո, շաքիլատերևների շրջանում, չսպասելով իսկական տերևների առաջացմանը։ Նոսրացման աշխատանքների ուշացումը չափազանց բացասաբար է անդրադառնում մատղաշ ծիլերի նորմալ զարգացման վրա և ձգձգվում է վեգետացիան ու բերքի ժամանակին հասունացումը։

Նոսրացման ժամանակ խիստ կերպով պետք է պահպանել տվյալ գյուղի կամ հողակտորի համար սահմանված միջբնային հեռավորությունը և յուրաքանչյուր բնում թողնվող բույսերի քանակը։

Միջբնային տարածությունները ճիշտ որոշելու համար յուրաքանչյուր նոսրացնող իր ձեռքին պետք է անպայմանորեն ունենա փայտից պատրաստված չափ։ Նոսրացման աշխատանքների բարձր որակը, հետևապես նաև բամբակի դաշտերի լիարժեքությունն ապահովելու համար, այդ գործը պետք է հանձնարարել փորձված կոլխոզնիկներին։



Մայիս ամսվա ընթացքում բամբակի դաշտերում անհրաժեշտ է կատարել 1—2 քաղհան-փխրեցում և մեկ տրակտորային կուլտիվացիա։

Զանգիբասարի, Էջմիածնի, Արտաշատի, մասամբ նաև մյուս բամբակացան շրջանների որոշ կոլխոզներում մայիսին և հունիսի սկզբներին բամբակենու ծիլերին հաճախ խոշոր վնասներ են պատճառում մի շարք վնասատուներ և հատկապես ագրոտիսի թրթուրները։ Ագրոտիսի թրթուրներին և բամբակենու մյուս վնասատուներին (լվիճ, շոտի տիզ, կարադրինա) ժամանակին հայտնաբերելու և հնարավոր վնասը կանխելու համար, անհրաժեշտ է բամբակի դաշտերում սահմանել ամենօրյա հսկողություն, և վնասատուներ հայտնաբերվելու դեպքում անմիջապես սկսել նրանց դեմ մեխանիկական ու քիմիական պայքար, ղեկավարվելով Գյուղբաժինների կողմից իջեցված հրահանգներով։

***

Ծխախոտի պլանտացիաների հեկտարի լիարժեքությունը պահպանելու նպատակով, դաշտը սածիլելուց 4—5 օր հետո անհրաժեշտ է ստուգել բույսերի դրությունը և [illegible]

չացած սածիլների տեղը տնկել նոր, ավելի հասունացած սածիլներ։ Ծխախոտի պլանտացիայի առաջին փխրեցումը պետք է կատարել դաշտը սածիլելուց 7—8 օր հետո, անկախ նրանից, դաշտում մոլախոտեր կան, թե՞ ոչ։

Պլանտացիաների հետագա փխրեցումը և քաղհանը կատարվում է յուրաքանչյուր անգամ դաշտը ջրելուց 2—3 օր հետո, երբ հողը «քեշի է եկել» (այսինքն ցամաքել է, բայց ոչ բոլորովին չորացել), սակայն ոչ ուշ, քան նախորդ փխրեցումից 10—12 օր անց։

Թե ցեխոտ և թե խիստ չորացած հողում քաղհան և փխրեցում կատարելը վատ արդյունք է տալիս։ Ցեխոտ հողում քաղհան-փխրեցում կատարելիս առաջանում են կոշտեր, աշխատողների ոտների տակ հողը պնդանում է և, բացի այդ, մոլախոտերի արմատները լրիվ չեն ոչնչանում։

Ժամանակին և ճիշտ կատարված քաղհանի ու փխրեցման շնորհիվ, հողի մեջ պահպանվում է խոնավությունը, ծխախոտի բույսը աճում է փարթամ, զերծ է մնում վնասատուներից և շուտ է հասունանում։

Բարձր ու լավորակ բերք ստանալու հա-



մար, անհրաժեշտ է ծխախոտի պլանտացիաները քաղհանել և փխրեցնել առնվազն 4—5 անգամ։ Երկրորդ և երրորդ փխրեցման ժամանակ պահանջվում է կատարել նաև բուկլից։ Ջրովի հողամասերում քաղհանից և փխրեցումից առաջ դաշտը պետք է ջրել։

Կարևոր նշանակություն ունի նաև ծխախոտի պլանտացիաների ճիշտ ու ժամանակին սնուցումը հանքային և տեղական պարարտանյութերով։ Ըստ որում առաջին սնուցումը պետք է տալ երկրորդ քաղհանի ու փխրեցման ժամանակ, իսկ երկրորդը՝ չորրորդ փխրեցման ժամանակ։ Յուրաքանչյուր սնուցման համար պահանջվում է տալ հեկտարին 30—40 կիլոգրամ ամիակային սելիտրա և 80—100 կիլոգրամ սուպերֆոսֆատ։ Պլանտացիան փխրեցնելուց առաջ պետք է պարարտանյութը հավասար չափով շաղ տալ ծխախոտի բույսերի միջշարքային տարածություններում և ապա կատարել խոր փխրեցում։

Ծխախոտի բույսի աճմանը մեծ վնաս են հասցնում ծխախոտի վնասատուները և հիվանդությունները, որոնց պատճառով հա-

ճախ պլանտացիաները մի քանի անգամ են սածիլվում և նորոգվում։ Ուստի անհրաժեշտ է շարունակ հսկողություն սահմանել, և ծըխախոտի պլանտացիաներում վնասատուներ ու հիվանդություններ նկատվելուն պես պայքար կազմակերպել նրանց դեմ։

***

Տաքարի ճակնդեղի ցանքերի մշակության սիստեմում մեծ նշանակություն ունի առաջին փխրեցումը, կամ ինչպես սովորաբար ասվում է՝ շարովկան։ Շարովկայի նպատակն է փշրել անձրևների հետևանքով առաջացած հողի կեղևը, պահպանել հողում եղած խոնավությունը, ոչնչացնել շարամեջ տարածություններում ծլած մոլախոտերը և դըրանով իսկ նորմալ պայմաններ ստեղծել ճակնդեղի ծիլերի զարգացման համար։

Շարովկան պետք է կատարել ճակնդեղի շարքերը նշմարվելուց անմիջապես հետո, չսպասելով լրիվ ծլմանը, շատ սեղմ ժամկետում, տրակտորային կամ ձիու կուլտիվատորներով։ Շարովկայի ժամանակ ճակնդեղի ծիլերը չվնասելու համար, անհրաժեշտ է այդ աշխատանքը կատարել զգուշությամբ։



Շաքարի ճակնդեղի բերքատվության բարձրացման գործում առանձնապես կարևոր նշանակություն ունի շարքերի նոսրացումը։ Ոչ մի միջոցառման թերակատարումն այնքան բացասական ազդեցություն չի ունենում ճակնդեղի բույսի զարգացման ու բերքատվության վրա, որքան նոսրացման անգամ փոքր ուշացումը կամ վատ որակը։ Այդ իսկ պատճառով, ճակնդեղի պլանտացիաների նոսրացման ժամանակի և մանավանդ որակի վրա պետք է հատուկ ուշադրություն դարձնել։

Նոսրացման նպատակն է հեռացնել բույսերի մի մասը և ստանալ ցանքի այնպիսի խտություն, որ մնացած բույսերը աճման և զարգացման տեսակետից գտնվեն լավագույն պայմանների մեջ։ Ճակնդեղի բույսի շարքերի նոսրացումն ամենից ավելի մեծ էֆեկտ տալիս է այն դեպքում, երբ այն կատարվում է մեկ անգամ և ոչ ուշ քան առաջին ու երկրորդ զույգ իսկական տերևների երևալու շրջանում։ Նոսրացման ժամանակ պետք է հեռացնել բոլոր թույլ, նվազ բույսերը, թողնելով միայն ամենաառողջները, միմյանցից 16—18 սանտիմետր հեռավորության վրա։ Նոսրացմանը զուգընթաց ան-

հրաժեշտ է կատարել շարամեջ տարածությունների փխրեցում:

Եթե նոսրացման ժամանակ նկատվում են դատարկ բներ, անհրաժեշտ է այդ տեղերում թրջված սերմերով կատարել լրացուցիչ ցանք կամ սածիլում, լիարժեք հեկտարներ ունենալու համար: Նոսրացումից 10—12 օր հետո պետք է կատարել շարքերի ստուգում, ապահովելով յուրաքանչյուր հեկտարի վրա 120—140 հազար բույս: Ստուգման ժամանակ անհրաժեշտ է հեռացնել այն բոլոր ավելորդ բույսերը, որոնք նոսրացման ժամանակ չեն հեռացվել կամ ծլել են նոսրացումից հետո:

Սովետական Միության մյուս ռեսպուբլիկաների հետ միասին, Սովետական Հայաստանի կոլխոզնիկները, ՄՏ կայանների և գյուղատնտեսության բոլոր աշխատողները մեծ խանդավառությամբ ընդունեցին բարձր բերք ստանալու համար Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության այս տարվա ապրիլի 24-ի Հրամանագիրը:

Առաջավոր կոլխոզները, բրիգադաները և



օղակները, ինչպես նաև տրակտորիստները, վերանայելով իրենց պարտավորությունները, ստանձնում են նոր, ավելի բարձր պարտավորություններ:

Կասկած չկա, որ տեխնիկական կուլտուրաների մշակությամբ զբաղվող մեր կոլխոզնիկները, կոլխոզնիկուհիները, ՄՏ կայանների աշխատողները և ագրոնոմները, անշեղորեն կենսագործելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի պատմական որոշումը, մշակման աշխատանքների լավագույն կազմակերպմամբ, ագրոմիջոցառումների ժամանակին ու բարձրորակ կիրառումով, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, կապահովեն տեխնիկական կուլտուրաների բարձր բերքատվությունը և հարազատ պետությանը կհանձնեն ավելի շատ բամբակ, ծխախոտ, շաքարի ճակնդեղ ու խորդենի:

Գ. ԱԶԱՐՅԱՆ

Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության
մինիստրի տեղակալ

# ԱՌԱՋԱՎՈՐ ԿՈԼԽՈԶԻ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ

Այս տարի գարունն ուշ բացվեց և գարնանային դաշտային աշխատանքները համեմատաբար ուշ սկսվեցին։ Այս հանգամանքը մեր կոլխոզնիկների և կոլխոզնիկուհիների, մեքենա-տրակտորային կայանների և գյուղատնտեսության բոլոր աշխատողների առջև հրամայական պահանջ է դնում բոլոր ուժերը լարել՝ գարնանային դաշտային աշխատանքները սեղմ ժամկետում և բարձր որակով կատարելու համար։

Բարձր բերքի համար մղվող պայքարի հաջողությունը վճռվում է այժմ, գարնանային դաշտային աշխատանքների ժամանակ։ Սեղմ ժամկետ և բարձր որակ—ահա՛ թե որն է այսօր կոլխոզային դաշտերում գլխավոր խնդիրը, որի կենսագործմանը պետք է ուղղված լինի գյուղում կատարվող ամբողջ ագիտացիոն-մասսայական աշխատանքը։



Կոլխոզնիկների մեջ կատարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքի լավ օրինակ է տալիս Նոր Բայազետի շրջանի Կարմիր գյուղի «Ավանգարդ» կոլխոզի պարտիական կազմակերպության ագիտկոլեկտիվը։

Գյուղատնտեսության առաջավորներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրով ոգեշնչված և կենսագործելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի պատմական որոշումը, այս կոլխոզն անցյալ տարի հացահատիկային կուլտուրաների առատ բերք աճեցրեց, որի համար Սովետական կառավարությունը կոլխոզի վարչության նախագահին և վեց առաջավոր օղակավարների շնորհեց Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։ Կոլխոզի ձեռք բերած այս աչքի ընկնող հաջողությունը արդյունք է նաև այն բեղմնավոր ու շնորհակալ աշխատանքի, որ կատարեց անցյալ տարի ագիտկոլեկտիվը։

Այս տարի ևս նա մեծ աշխատանք է կատարում բարձր բերքի համար մղվող պայ-

քարում, ոգևորելով կոլխոզնիկներին ու կոլխոզնիկուհիներին, բարձրացնելով նրանց արտադրական և աշխատանքային ակտիվությունը:

Երբ հրապարակվեց Ալթայի երկրամասի կոլխոզնիկների, կոլխոզնիկուհիների և գյուղատնտեսության մասնագետների դիմումը, ցարնանացանի նախապատրաստության օրերն էին: Թաղերում, ակումբում, կոլխոզնիկների առանձին խմբերի համար ագիտատորներն ընթերցում և պարզաբանում էին ալթայցիների դիմումը, բացատրում նրանց, թե ի՞նչ պետք է անեն իրենք՝ «Սպարտակ» կոլխոզի անդամները, որպեսզի ավելի շատ բերք ստանան: Եվ կոլխոզնիկները, արձագանքելով ալթայցիների դիմումին, մեծ ոգևորությամբ սոցիալիստական մրցություն ծավալեցին գարնանացանը կազմ ու պատրաստ դիմավորելու համար:

Գարունը բացվելուն պես «Սպարտակ» կոլխոզի բոլոր բրիգադաներն ու օղակները կազմակերպված, լրիվ կազմով և արտադրական միջոցներով դաշտ դուրս եկան: Հենց առաջին օրը դաշտային աշխատանքներին մասնակցեցին ավելի քան 600 մարդ: Նախապատրաստությունը լիակատար էր:



Կոլխոզը պատրաստի ուներ ավելի շատ գութան, գյուղատնտեսական ամեն տեսակի ինվենտար, ավելի շատ և բարձր որակի սերմացու, քան պահանջվում էր: Կենդանի քաշող ուժը նույնպես լավ վիճակում էր:

Գարնանացանի գործնական աշխատանքներն սկսվելուց առաջ պարտիական կազմակերպության ժողով գումարվեց, որտեղ քննության առնվեց դաշտային աշխատանքներն արագ տեմպով կատարելու հարցը: Ագիտատորներին հանձնարարվեց բոլոր բրիգադաները, օղակները, բոլոր կոլխոզնիկներին ու կոլխոզնիկուհիներին սոցիալիստական մրցության մեջ ներգրավել, օգնել նրանց՝ սոցիալիստական մրցության պայմանագրեր կնքելու գործում:

Ագիտատորներն անցան աշխատանքի: Երկու-երեք օրից հետո մաճկալները, ցանքբարները, փոցխողները, բրիգադիրները, օղակավարներն արդեն իրենց ձեռքին ունեին կոնկրետ կերպով գրված սոցիալիստական մրցության պարտավորություններ:

Ագիտատորները կենդանի օրինակներով կոլխոզնիկներին պարզաբանում էին ցանքի ժամկետը կրճատելու և նրա որակը բարձրացնելու կարևորությունը:

Կոլխոզի վարչությունը նախօրոք մշակել էր գարնանացանի գրաֆիկ։ Սակայն դաշտային աշխատանքների երրորդ օրը այդ գրաֆիկը խախտվեց անբարենպաստ եղանակի պատճառով։ Նույն օրը երեկոյան պարտիական կազմակերպությունն իր ժողովում հանձնարարեց ագիտատորներին՝ աշխատանք կազմակերպել մաճկալների մեջ, նրանց առջև խնդիր դնել բարձրացնելու արտադրողականությունը ցանքի աշխատանքներում։

Հաջորդ օրը դաշտում աշխատանքի ընդմիջումի ժամին ագիտատորներն իրենց զրույցի թեման նվիրեցին վար ու ցանքի ընթացքին։ Ագիտատոր ընկ. Հ. Խաչատրյանը կոլխոզնիկների հետ ունեցած զրույցի ժամանակ հետևյալ միտքն արտահայտեց.

— Մեր կոլխոզը գարնանացանը պետք է ավարտի 12 օրում։ Բայց երեկ մեր գրաֆիկը խախտվեց, մեկ օր կորցրինք։ Սակայն մենք ունենք բոլոր հնարավորությունները, որպեսզի ցանքն ավարտենք ոչ թե 12, այլ նույնիսկ 9 օրում։ Դրա համար մենք պետք է օրվա յուրաքանչյուր ժամն օգտագործենք արդյունավետ և աշխատենք լարված։ Եթե ամեն մի մաճկալ 20 տոկոսով ավելի հերկ կատարի,



մենք կհասնենք մեր նպատակին. իսկ տրակտորային բրիգադան նույնպես իրեն թափ կտա։

Բարձր արտադրողականության առաջին օրինակը տվին հենց իրենք՝ մաճկալ ագիտատորներն ու ցանքրարները։ Ագիտատոր ընկ. Հ. Խաչատրյանն իր խոսքը ամրապնդեց անձնական օրինակով։ Լավ օրինակ ցույց տվեց կոլխոզի № 1 բրիգադայի մաճկալ՝ ագիտատոր ընկ. Հ. Հակոբյանը, որն սկսեց օրական կատարել համարյա մեկ և կես արտադրական նորմա։ Այդ բրիգադան բոլորից շուտ ավարտեց ցանքը։

Ագիտատորների զրույցը և անձնական օրինակը մեծ նշանակություն ունեցավ։ Եթե դաշտային աշխատանքների առաջին օրերին վարի ու ցանքի առաջադրանքները մի փոքր թերակատարվել էին, ապա հաջորդ օրերին այդ առաջադրանքները ոչ միայն կատարվեցին, այլև զգալիորեն գերակատարվեցին։ Ցանքի ժամկետը կրճատվեց։ Նախատեսված 12 օրվա փոխարեն ցանքն ավարտվեց իրոք 9 օրում։

Ի՞նչն է ամենից ուշագրավը «Սպարտակ» կոլխոզի ագիտատորների աշխատանքում։

Ագիտկոլեկտիվը, որի ղեկավարն է սկզբ-

նական պարտիական կազմակերպության բյուրոյի քարտուղար ընկ. Ա. Աղաջանյանը, աշխատանքը կազմակերպում է բազմապիսի ձևերով և, որ գլխավորն է, այն զուգակցում, շաղկապում է կոլխոզի, նրա բրիգադների, օղակների և առանձին կոլխոզնիկների առջև դրված օրվա կոնկրետ խնդիրների հետ:

Ագիտատորը ոչ միայն խոսում և պարզաբանում է սոցիալիստական մրցության նշանակությունը, այլև կոնկրետ կերպով կազմակերպում ու ծավալում է մրցությունը, ստուգում է պարտավորությունների կատարումը, ընդհանրացնում է լավագույն փորձը: Տասն օրը մեկ անգամ բրիգադներում գումարվում են կոլխոզնիկների արտադրական խորհրդակցություններ, որտեղ ամփոփվում են մրցության արդյունքները:

Կոլխոզնիկներին պատմելով մրցության մեջ ձեռք բերված հաջողությունների մասին, ագիտատորները ցույց են տալիս այդ հաջողությունները բազմապատկելու միջոցները: Սիստեմատիկ կերպով լույս տեսնող խլթիչովկաները լուսաբանում են մրցության ընթացքը, խրախուսում առաջավորներին, քննադատում բրիգադների, օղակների և ա-



ռանձին կոլխոզնիկների աշխատանքում եղած թերությունները:

Ամեն օր ագիտատորները դաշտ են գնում թարմ թերթերով: Նրանք կոլխոզնիկներին հաղորդում են օրվա նորությունները, միջազգային իրադարձությունները և, դրա հետ միասին, պատմում են սկզբնական պարտիական կազմակերպության այս կամ այն ձեռնարկման մասին, որի նպատակն է նոր թափ հաղորդել կոլխոզային արտադրությանը:

Այսպես, օրինակ, գարնանացանի սկզբին պարտիական կազմակերպությունը որոշում կայացրեց՝ լայն աշխատանք ծավալել դաշտերում մինակները վերացնելու ուղղությամբ: Այդ որոշումն ագիտատորները պարզաբանեցին կոլխոզնիկներին, բացատրեցին, որ մինակները վերացնելով, կոլխոզը կստանա տասնյակ հեկտար նոր, բերրի հողեր, միևնույն ժամանակ կհեշտանա գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացումը:

Պարտկազմակերպության այդ որոշումը և դրա առթիվ ագիտատորների ունեցած զրույցները մեծ հետաքրքրություն առաջացրին կոլխոզնիկների մեջ: Եվ այժմ կոլ-

խողի դաշտերն այցելողը կհիանա այն մեծ աշխատանքով, որ կատարում են այդտեղ հարյուրավոր կոլխոզնիկներ՝ մրջնակները վերացնելու համար: Հենց այս տարի կոլխոզը այդ մրջնակների վերացումից ստացված նոր հողերում առաջին ցանքը կատարեց:

«Սպարտակ» կոլխոզի ագիտատորների աշխատանքից շատ այլ օրինակներ էլ կարելի է բերել: Ագիտատորներ ընկ. ընկ. Ծ. Մուշյանը, Պ. Ենգոյանը, Ս. Հայրապետյանը, Հ. Ջաղացպանյանը և մյուսները մեծ հարգանք ու հեղինակություն են վայելում կոլխոզնիկների մեջ: Այդ հարգանքը նրանք վաստակել են իրենց լավ աշխատանքով, կոլխոզնիկներին հետաքրքրող հարցերի մասին տված իրենց համոզիչ պատասխաններով, կոլխոզային արտադրության մեջ իրենց կատարած բարձր արտադրողական աշխատանքով:

Ագիտատորների գործունեությունը զորեղ խթան է հանդիսանում կոլխոզի աշխատանքների հաջողության համար:

«Սպարտակ» կոլխոզի ագիտատորներն այժմ իրենց զրույցները, իրենց ամբողջ աշխատանքը ուղղել են ցանքերը լավ մշակելու նպատակին:

Ս. ՊԵՏՐՈՍՅԱՆ

*ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ*

# ՀՈՒՅՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՐՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ

Մարտին լրացավ մեկ տարին այն օրից, երբ հրապարակվեց ԱՄՆ-ի պրեզիդենտ Տրումենի դիմումը կոնգրեսին՝ Հունաստանին և Թյուրքիային «օգնություն» ցույց տալու վերաբերյալ: Այդ դիմումն սկիզբ դրեց Հունաստանում ԱՄՆ-ի ինտերվենցիային: Ամերիկյան միջամտությունն անհամար տառապանքներ բերեց հույն ժողովրդին, խաղաղության դեմ սպառնալիք ստեղծեց Բալկաններում:

ԱՄՆ-ի կոնգրեսի բաց թողած 300 միլիոն դոլլարը համարյա ամբողջապես ծախսվել է հույն ժողովրդի դեմ ուղղված պատերազմական գործողությունների վրա և Հունաստանում ԱՄՆ-ի ռազմա-ստրատեգիական պլացդարմ ստեղծելու նպատակով: Ամերիկյան իմպերիալիստներն ընդարձակում են հունական Պիրեա, Սալոնիկ, Վոլոս նավահանգիստները, խոշոր օդանավակայաններ են

կառույցում Յանինայում, Լարիսայում, Սալոնիկում և այլ վայրերում, լայնացնում են գոյություն ունեցող խճուղիները և կառուցում են նոր խճուղիներ բալկանյան հարևանների հետ Հունաստանի սահմանների ուղղությամբ։ Անընդհատ Հունաստան են ժամանում փոխադրանավեր, զենք բերելով միապետական-ֆաշիստական բանակի համար, գալիս են ռազմանավեր՝ ամերիկյան ծովային հետևակով։

1947 թվականի նոյեմբերին կոնգրեսին տված հաշվետվության մեջ Տրումենը ստիպված եղավ խոստովանել, որ «Հունաստանում պատերազմական գործողությունների ուժեղացումն անհրաժեշտ դարձրեց միջոցները ծախսել ռազմական բնույթի ձեռնարկումների վրա»։ Ներկայումս ԱՄՆ-ի սենատն ընդունել է պետական քարտուղար (արտաքին գործերի մինիստր) Մարշալլի առաջարկը՝ Հունաստանին և Թյուրքիային «օգնություն» ցույց տալու համար լրացուցիչ 275 միլիոն դոլլար հատկացնելու մասին։

Անցյալ տարվա ընթացքում Հունաստանի ամբողջ ռազմական, քաղաքական ու տնտեսական ապարատը անցավ ԱՄՆ-ի լիակատար վերահսկողության տակ։ Ստեղծված է հույն-ամերիկյան միացյալ շտաբ, որտեղ



իշխում են ամերիկացիները, հունական յուրաքանչյուր զորամասին, ընդհուպ մինչև դումարտակը, կցված են ամերիկյան սպաներ, որոնք փաստական հրամանատարներ են հանդիսանում։ Հունական կառավարությունը կազմված է ամերիկյան դեսպանության ցուցումով և անվերապահորեն կատարում է ամերիկյան կարգադրությունները։

Երկրի ամբողջ էկոնոմիկան նույնպես անցել է ԱՄՆ-ի «էքսպերտների» ձեռքը։ Ամերիկացիների տիրապետության ներքո, որոնք շահագրգռված են միմիայն իրենց ռազմա-ստրատեգիական նպատակների իրականացումով, երկրի էկոնոմիկան լիակատար անկման է հասել, իսկ աշխատավոր բնակչությունն ընկել է լիակատար աղքատացման վիճակի մեջ։ Անգլիական «Նյու ստեյտսմեն էնդ նեյշն» շաբաթաթերթի թղթակից Պիրլմենը Հունաստանի մայրաքաղաք Աթենքից ուղարկած մի թղթակցության մեջ գրում է. «Եթե չհաշվենք Գերմանիան, ապա Հունաստանում, հավանորեն, վերականգնման ավելի քիչ նշաններ կան, քան եվրոպական կամ բալկանյան որևէ այլ երկրում։ Այստեղ թագավորում է սոսկալի սով, խոր դեպրեսիան և անհուսալիության զգացումը»։

Արդյունաբերական արտադրանքի մակարդակը Հունաստանում կազմում է մինչպատերազմյան մակարդակի միայն 61 տոկոսը։ Ժողովուրդը սովի է մատնված, իսկ կառավարող միապետական-ֆաշիստական վերնախավը հարստանում է։ Ամերիկյան ժուռնալիստ Ջորջ Պոլկը «Հարպերս մեգեզին» ժուռնալի մեջ բերում է այսպիսի մի օրինակ. «ԱՄՆ-ը «Լիբերտի» տիպի մի քանի նավ էր հանձնել հունական կառավարությանը։ Վերջինս դրանք անմիջապես վաճառեց մասնավոր նավատերերի։ Այժմ այդ նավերը լողում են Պանամայի դրոշակով և նավատերերի համար բերում են տարեկան ավելի քան 200 հազար դոլլարի օգուտ»։ Հունական կառավարող վերնախավի ծախվածությունն ու քայքայումը խոսակցության առարկա է դարձել։ «Վերջերս,— գրում է Պոլկը,— ես անցնում էի այն շրջաններով, որտեղ քաղաքացիական պատերազմ է մղվում։ Ես հարցրի մի գյուղացու, թե վտանգավոր չէ՞ արդյոք կաշվե վերարկուս թողնել ավտոմոբիլի մեջ։ «Կարող եք ապահով լինել,— պատասխանեց գյուղացին,— Հունաստանում բոլոր ավազակները կառավարության մեջ են գտնվում»։

Երկրում տիրում է չտեսնված ֆաշիստա-



կան տեռոր— մտցված է մահապատիժ, արձակված են կոմպարտիան և ԷԱՄ-ի (Ազգային-ազատագրական ճակատի) բոլոր կազմակերպությունները, կոմպարտիայի շենքերն ավերված են, փակված են բոլոր դեմոկրատական թերթերը, շատ դեմոկրատներ սպանված են կամ գտնվում են բանտերում։ Արձակված են պրոգրեսիվ պրոֆմիութենական և երիտասարդական կազմակերպությունները։ Նրանց լիդերները նետված են համակենտրոնացման ճամբարներ կամ բանտեր։ Ֆրանսիական կին-ժուռնալիստ Սիմոնա Տերին գրում է, թե այն անձանց թվում, որոնց հետ ինքն առիթ է ունեցել հանդիպելու Հունաստանում, չկար և ոչ մեկը, որի ազգականներից կամ ընկերներից ֆաշիստները սպանած կամ բանտ նետած չլինեն։ Նա բերում է հետևյալ թվերը— 20 հազար հունական դեմոկրատներ գտնվում են բանտերում, 34 հազար աքսորված են կղզիները, 619 մարդ պաշտոնապես մահապատժի է ենթարկվել, ավելի քան 5 հազար հայրենասերների ֆաշիստները սպանել են անկյուններից։ «Զոհերի ընդհանուր թիվը,— գրում է Տերին,— հասնում է 60 հազարի։ Ամերիկյան օգնության համար հարկավոր է վճարել։ Տրումենը մատակարարում է դոլ-

լարներ, Իսկ Սոֆուլիսը (հունական կառավարության ներկայիս ղեկավարը)— դիակներ»։ Ամերիկյան իմպերիալիստները և նրանց հույն կամակատարներ՝ ֆաշիստ միապետականները Հունաստանի սարկացման և Հունաստանը դեմոկրատական երկրների դեմ պատերազմի օջախ դարձնելու իրենց պլանների մեջ հաշվի չեն առել ամենագլխավորը— հույն ժողովրդի հաստատ վճռականությունը՝ ինչ գնով էլ լինի պաշտպանելու իր երկրի անկախությունը։

Հունաստանի թշնամիները երկու անգամ խաբեցին հույն ժողովրդի ներկայացուցիչներին—1944 թվականին Լիբանանի կոնֆերենցիայում՝ Ազգային միասնության կառավարություն կազմելու ժամանակ, և 1945 թվականին՝ Վարկիզայի կոնֆերենցիայում։ Վարկիզայում ԷԱՄ-ը, ելնելով երկրում քաղաքացիական պատերազմը դադարեցնելու շահերից, համաձայնվեց կամավոր կերպով զինաթափել ժողովրդական-ազատագրական բանակը՝ ԷԼԱՍ-ը, որն իր ուսերի վրա էր կրել գերմանա-ֆաշիստական ու իտալա-ֆաշիստական զորքերի դեմ մղված պայքարի ամբողջ ծանրությունը օկուպացիայի տարիներին։ Հունական կառավարությունն իր կողմից պարտավորվեց բնակչության



համար ապահովել տարրական դեմոկրատական իրավունքներ։ Բայց ժողովրդին ստոր կերպով խաբեցին. ԷԼԱՍ-ը զինաթափվելուց հետո, ազատագրական շարժման գործիչների նկատմամբ արյունահեղ դատաստան տեսնվեց։ Երկիրը վաճառվեց ու մատնվեց անգլիական, իսկ այնուհետև ամերիկյան օկուպանտների ձեռքը։ Ոչնչացվեցին դեմոկրատիայի մնացորդները և հաստատվեց միապետական-ֆաշիստական ռեժիմ։

Դրանից հետո հունական դեմոկրատական պարտիաներն ու կազմակերպություններն այլևս թույլ չտվին իրենց խաբել։ Հունական հայրենասերները, կոմպարտիայի և ԷԱՄ-ի կոչով, նորից, ինչպես գերմանա-ֆաշիստական օկուպացիայի ժամանակաշրջանում, բարձրացան լեռները, ստեղծեցին պարտիզանական բանակ և զենքը ձեռքներին կանգնեցին դեմոկրատիան ու իրենց հայրենիքի անկախությունը պաշտպանելու դիրքում։

Հույն ժողովուրդը, նրա քաղաքական ղեկավարները, դեմոկրատական բանակը պարզ պատկերացնում էին պայքարի դժվարությունը և միևնույն ժամանակ այն վեհ նպատակները, հանուն որոնց նրանք հար-

կադրված եղան նորից զենք վերցնելու։ Էգեյան Մակեդոնիայի ժողովրդա-ազատագրական ճակատի կոնգրեսում հանդես գալով՝ Հունաստանի ժամանակավոր դեմոկրատական կառավարության նախագահի տեղակալ և ներքին գործերի մինիստր Յաննիս Իոաննիդիսը հայտարարեց. «Հունաստանն իր աշխարհագրական դիրքով հարմար բազա է հանդիսանում հարևան ժողովրդական ռեսպուբլիկաների և Սովետական Միության դեմ իմպերիալիստների ագրեսիվ պլանների համար։ Մեր պայքարը օտարերկրացիներին մեր երկրից վռնդելու համար, նրա անկախությունը պաշտպանելու, մոնարխիզմը-ֆաշիզմը տապալելու և ժողովրդական դեմոկրատիա հաստատելու համար, գրանիտե պատնեշ է հանդիսանում ընդդեմ ամերիկյան իմպերիալիստների և հունական միապետական-ֆաշիստական պլուտոկրատների պլանների։ Ահա՛ թե ինչու նրանք այդպես անամոթաբար և դաժանորեն կռվում են մեր դեմ»։

Հույն ժողովուրդը իր պայքարն սկսեց անասելի ծանր պայմաններում։ Զենք չկար, որովհետև զենքը Վարկիզայի համաձայնագրով հանձնված էր անգլիացիներին, որոնք հանդես եկան իբրև միջնորդ։ Խախտելով



Վարկիզայի համաձայնությունը, անգլիացիներն այդ զենքը հանձնեցին հունական միապետական - ֆաշիստական բանդաներին ու զորքին։ Ֆրանսիական ժուռնալիստներ Բասսիսը և Բինիարիսը «Հունաստանի դեմոկրատական բանակը» վերնագրով իրենց գրքի մեջ բերում են հունական մի պարտիզանի նամակը, որը բնութագրում է իրադրությունը պայքարի առաջին օրերին։ «Մենք ո՛չ միայն զենք չունեինք,— ասված է նամակի մեջ,— չունեինք նույնիսկ գրպանի դանակ։ Մենք սովի էինք մատնված, և ողջ մնացինք միմիայն շնորհիվ գյուղացիների աջակցության, որոնք մեզ կերակրում ու հագցնում էին, մեր մեջ տեսնելով իրենց ազատարարներին։ Խլելով զենքը միապետականներից, մենք կարողացանք հավաքել ոչ-մեծ զինված խմբեր՝ թվով 10-ից մինչև 15 մարդ, որպեսզի պաշտպանվեինք և որպեսզի փրկեինք մեր ընտանիքները, մեր տները, մեր մայրերին, մեր Հունաստանը»։

Այսպես սկսվեց պայքարը։ Ներկայումս դեմոկրատական բանակի դրոշների ներքո Հունաստանը ֆաշիստ միապետականներից ու օկուպանտներից ազատագրելու համար մարտնչում են մի քանի տասնյակ հազար հույներ։ Ամբողջ ժողովրդի աջակցությունը

վայելող այդ բանակն ազատագրել է երկրի տերիտորիայի մոտավորապես երկու երրորդ մասը: Ազատագրված տերիտորիայի բնակչությունն այժմ կազմում է 2 միլիոն մարդ: «Մենք ոչ միայն կարողացանք պաշտպանել մեզ,—ասաց գեներալ Մարկոսը,—այլև, ինչպես ցույց են տալիս իրադարձությունները, ընդունակ ենք անցնելու հարձակման: Մեր հին պարտիզանական բանակը մենք այժմ վերակառուցում ենք, դարձնելով կանոնավոր բանակ»:

Օտարերկրյա ռեակցիոն մամուլը ձգնում էր լռության մատնել ազատագրական շարժման հաջողությունները Հունաստանում: Երբ այդ չհաջողվեց, նրանք զրպարտիչ կամպանիա սկսեցին «ինտերնացիոնալ բրիգադայի» մասին, որն իբր մարտնչում է հունական պարտիզանների կողմում, «Ալբանիայի, Հարավսլավիայի և Բուլղարիայի կողմից պարտիզաններին զինված օգնություն ցույց տրվելու» մասին և այլն: Հունաստանում գտնվող օտարերկրյա ժուռնալիստները, այդ թվում նաև դեպի հունական ժողովրդական-ազատագրական շարժումը թշնամաբար տրամադրվածները, շուտով ստիպված եղան մերկացնելու այդ կեղծիքը:

«Հունաստանում ռազմաճակատ է ամենու-



րեք»,— հարկադրված է արձանագրել ամերիկյան «Նյու-Յորք Թայմս» թերթի թղթակից Դեն Ադամս Շմիդտը: «Բռնությունը և սարսափը,— գրում է նա,— թուլացրել են իշխանության հեղինակությունը հունական Թրակիայի ու Մակեդոնիայի ընդարձակ շրջաններում, Պինդոսի լեռներում և նրանց շուրջն ընկած այլ շրջաններում: Աթենքում նույնպես կառավարության իշխանությունը սահմանափակ է: Կառավարությունը վերահսկում է միայն կապի գլխավոր երակները և խոշոր բնակելի կենտրոնները: Բայց անգամ այդ շրջաններում էլ վերահսկումը անհուսալի է: Պարտիզանների և հունական բանակի միջև մարտեր են բռնկում ամենուրեք և ամեն ժամանակ»:

Հունական միապետական-ֆաշիստական իշխանությունները և անգլո-ամերիկյան ռազմական միսիաները բազմիցս հայտարարել են դեմոկրատական բանակի դեմ «վճռական» ու «վերջնական» հարձակում սկսելու մասին: Ամբողջապես անգլիական ու ամերիկյան սպառազինությամբ հանդերձավորված և ամերիկյան հրամանատարությամբ գործող միապետական բանակը, հենց հունական իշխանությունների պնդմամբ, իր թվով տասնապատիկ գերազանցում է դեմոկրա-

*տական բանակին։ Ամերիկյան միջոցներով ներկայումս ստեղծվում են հունական բանակի ու ժանդարմերիայի նոր կազմավորումներ։ Այնուամենայնիվ, հարձակողական գործողությունները սովորաբար վերջանում են ֆաշիստ-միապետականների պարտությամբ։ Մարտերի ընթացքում հունական դեմոկրատական բանակը, չնայած կորուստներին, թվական տեսակետից ոչ թե կրճատվում, այլ աճում է։ Նրան կամավոր կերպով միանում են ազատագրված քաղաքների ու գյուղերի բնակիչները, նրա կողմն են անցնում միապետական բանակի շատ զինվորներ ու սպաներ։*

*Հյուսիսային Հունաստանում անգլիական տնտեսական միսիայի նախկին ղեկավար գնդապետ Շեպպերդը գրում է. «Հունական բանակը երբեք չի ջախջախի պարտիզաններին, ինչպիսի քանակության լրացուցիչ սպառազինություն էլ որ ստանան այդ բանակն ու ռազմա-օդային ուժերը։ Ինչ էլ որ անեն հունական բանակի համար, նա երբեք չի ջախջախի պարտիզաններին։ Ճիշտ է ասված, թե «ում գործն արդար է, նա եռակի զինված է»։ Պարտիզանները, գրում է Շեպպերդը, մարտնչում են մարդուն ամենաթանկ բանի՝ ազատության համար»։*



*Դեմոկրատական բանակն արդեն վաղուց բարոյական-քաղաքական հաղթանակ է տարել միապետական-ֆաշիստական բանակի նկատմամբ։ Ընկճված է միապետական բանակի ոգին, բանակ, որը ճնշում է ժողովրդին հանուն օտարերկրյա իմպերիալիստների ու տեղական դավաճանների շահերի, որոնք խորթ են երկրի համար։ Պատահական չէ, որ միապետական-ֆաշիստական կառավարությունը Մակրոնիսի կղզում ստեղծել է հատուկ համակենտրոնացման ճամբար իր բանակի զինվորների ու սպաների համար, որոնք չեն ցանկանում կռվել պարտիզանների դեմ, ժողովրդի դեմ։ Արդեն այդ ճամբարն են աքսորված տասնյակ հազարավոր զինվորներ ու սպաներ։*

*Չնայած ամենադաժան սպիտակ տեռորին, ֆաշիստ միապետականները մշտապես երկյուղ են կրում ժողովրդի վրեժխնդրությունից։ Միապետական մեծ բանակը կառչել է խոշոր քաղաքներին, որովհետև ֆաշիստական իշխանությունները վախենում են պարտիզանների և բնակչության հարձակումներից։ Ականատեսները պատմում են, որ 1947 թվականի ամառը կառավարական զորքերով լեփ-լեցուն Լարիսա քաղաքն էր թափանցել մի պարտիզան, ծնողների հետ տեսնվելու*

համար: Ֆաշիստներից մեկը փողոցում ճանաչել էր նրան: Վայրկյանապես լուր էր տարածվել, որ քաղաքում պարտիզաններ կան: Սկսվել էր խուճապը, մասսայական հրաձգությունը: Այն թաղամասը, որտեղ տեսել էին պարտիզանին, շրջապատվել էր զորքերով: Այն տան դեմ, որտեղ ապրում էին պարտիզանի հարազատները, տանկային գրոհ էր ձեռնարկվել: Տունը ավերվել էր: Այդ խուճապից օգտվելով, պարտիզանը փախել էր: Չափազանց բնորոշ այս դեպքը, ցույց է տալիս, թե որքան մեծ է իշխանությունների երկյուղը պարտիզաններից:

Հունաստանի մի շարք շրջաններում հաղորդակցությունը խանգարված է: Ամբողջ քաղաքներ և շրջաններ մեկուսացված են միմյանցից: Քաղաքների միջև երթևեկությունը կատարվում է շաբաթական երկու-երեք անգամ, ըստ որում մեքենաներն ընթանում են տանկերի պահպանության ներքո: Կամուրջներն ու ճանապարհները մշտապես ավերվում են: Հյուսիսային Հունաստանի քաղաքներում երեկոյան ժամը 9-ից հետո քաղաքացիներին արգելված է դուրս գալ: Միապետական-ֆաշիստական Հունաստանի քաղաքների բնակչությունն ապրում է տեռորի, աղքատության, օկուպացիայի պայմաններում,



որոնք քիչ բանով են տարբերվում գերմանա-ֆաշիստական օկուպացիայի ժամանակաշրջանից:

Այլ դրություն է Հունաստանի ազատագրված տերիտորիայում: Հույն ժողովրդի համար մեծ իրադարձություն հանդիսացավ ազատ Հունաստանի ժամանակավոր դեմոկրատական կառավարության ստեղծումը 1947 թվականի դեկտեմբերի վերջերին: Այդ կառավարության կազմի մեջ են գտնվում ժողովրդի լավագույն ներկայացուցիչները, անկախության համար մարտնչող կոփված մարտիկները, գերմանա-ֆաշիստական ու օտարերկրյա այլ օկուպանտների դեմ մղված պայքարի հերոսները: Սրանք են՝ գեներալ Մարկոս — ժամանակավոր կառավարության ղեկավարն ու ռազմական մինիստրը, որը կոմունիստ է, ժողովրդական դիմադրության և ԷԼԱՍ-ի զորամասերի կազմակերպիչներից մեկը գերմանա-ֆաշիստական օկուպացիայի տարիներին. սրանք են Յաննիս Իոաննիդիսը, Պետրոս Ռուսոսը, Պորֆիրոգենիսը, Բարձոտասը և ուրիշներ:

Ժամանակավոր կառավարությունն իր առջև խնդիր է դրել երկիրն ազատել օտարերկրյա իմպերիալիստներից ու նրանց կամակատարներից, ամրապնդել ժողովրդական-դեմոկրա-

տական իշխանությունը ազատ տերիտորիայում, ազգայնացնել արդյունաբերությունը և կիրառել ագրարային ռեֆորմ, բոլոր հույն քաղաքացիների համար ապահովել դեմոկրատական իրավունքները, և այլն։ Պատերազմի և օտարերկրյա ինտերվենցիայի ծանր պայմաններում նա հաջողությամբ կատարում է իր պարտավորությունները ժողովրդի հանդեպ։ Ժամանակավոր կառավարության այս տարվա հունվարի 30-ի նիստում իր հաշվետվության մեջ գեներալ Մարկոսը հաղորդեց դեմոկրատական բանակի մեծ հաջողությունների մասին։ Միևնույն ժամանակ պրեմյեր-մինիստրի տեղակալ Իոաննիդիսը պատմեց ժողովրդական կոմիտեների աշխատանքի մասին։ Նրանց գործունեության շնորհիվ ազատագրված տերիտորիայում ստեղծված են հիվանդանոցներ, ամբուլատորիաներ, գործում է 200 դպրոց, հաջողությամբ կիրառվում է ագրարային ռեֆորմը։ Վերջերս հողազուրկ գյուղացիներին բաժանվեցին ղիքսբուրգների (հունական թագավորական դինաստիայի) կալվածքները— 33 հազար հեկտար հող։ Ազատագրված տերիտորիաներում այս տարի բերքը հասավ մինչպատերազմյան մակարդակի 80—95 տոկոսին։



***

Հույն ժողովրդի առջևում դեռ կան ամենածանր փորձություններ։ Անգլիական զորքերը շարունակում են մնալ Հունաստանում։ Ամերիկյան ինտերվենտները ոչ միայն մտադիր չեն հրաժարվել իրենց ավանտյուրիստական և ընդհանուր խաղաղության համար վտանգներով հղի քաղաքականությունից Հունաստանում, այլև, ինչպես փաստերը ցույց են տալիս, ավելի ու ավելի են ընդլայնում ինտերվենցիայի մասշտաբները։

Միևնույն ժամանակ միանգամայն ակընհայտ է, որ ո՛չ հունական ֆաշիստ միապետականները, ո՛չ անգլո-ամերիկյան իմպերիալիստները չեն կարողանա ստրկացնել հույն ժողովրդին։ Նա ավելի՛ ու ավելի՛ է համախմբվում ֆաշիստ միապետականների և ինտերվենտների դեմ մղվող պայքարում։ Հույն ժողովրդի կողմն է ամբողջ առաջադեմ մարդկության համակրանքը։ Մի շարք երկրներում ստեղծված են հույն ժողովրդին օգնող կոմիտեներ, միջոցների հանգանակություն է կատարվում՝ Հունաստանում ֆաշիստական տեռորի զոհերին օգնելու համար, և այլն։

Ազատասեր հույները, որոնք հաջողությամբ մարտնչում էին իտալա-ֆաշիստա-

Գինը 50 կոպ.

կան ու գերմանա-ֆաշիստական օկուպանտ-
ների դեմ, իսկ այնուհետև՝ անգլիական
օկուպանտների դեմ, կկարողանան պաշտ-
պանել իրենց երկրի անկախությունը նաև
ամերիկյան ինտերվենտներից ու նրանց
ֆաշիստական կամակատարներից։ Այդ ար-
դարացի պայքարում նրանց կողմն է ամ-
բողջ առաջադեմ մարդկության բարոյական
աջակցությունը։

Ա. ՇԱՏԻԼՈՎ

Պատ. խմբագրի տեղակալ՝
Կ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

ՎՖ 03132 Պատվեր № 366 Տիրաժ 9.000
Ստորագրված է տպագրության 14.V 1948 թ.
Պոլիգրաֆ. և Հրատ. Վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
Блокнот Агитатора